Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 14 ՀՈՒԼԻՍ 1953

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 2—52—78



# ՍՍՌՄ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՆՈՐ, ՀԶՈՐ ՎԵՐԵԼՔԸ

Ստեղծագործական ուժերով լի սովետական ժողովուրդը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ վստահորեն առաջ է գնում դեպի կոմունիզմ։ Մեր ժողովուրդը Սովետական Միության Կոմունիստական պարտիայի և նրա Կենտրոնական Կոմիտեի ղեկավարությամբ ապահովեց հզոր վերելք ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում։ Անշեղորեն ամրապնդվում է մեր սոցիալիստական Հայրենիքի տնտեսական և պաշտպանական հզորությունը, զգալի հաջողություններ են ձեռք բերվել բանվորների, կոլտնտեսականների, ինտելիգենցիայի, բոլոր սովետական մարդկանց կյանքի հետագա բարելավման ասպարեզում։

Մեր երկրում ստեղծվել է սոցիալիստական հզոր ինդուստրիա, բազմակողմանիորեն զարգացած ծանր արդյունաբերություն, որը հանդիսանում է սոցիալիստական էկոնոմիկայի հիմքերի հիմքը։ Անշեղ վերելք է ապ-

րում հայրենական մեքենաշինությունը, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերն ապահովելով ժամանակակից տեխնիկայով։ Բարձր մակարդակի է հասել մեր թեթև և սննդի արդյունաբերությունը, նա այժմ հնարավորություն ունի բավարարելու քաղաքային և գյուղական բնակչության աճող պահանջմունքները։ Հետպատերազմյան տարիներին վերականգնված է գյուղատնտեսությունը։

Սովետական ժողովուրդը անձնվիրաբար պայքարում է հինգերորդ հնգամյակի կատարման և գերակատարման համար։ 1951—1952 թվականների պլանների կատարումը, ժողովրդական տնտեսության և կուլտուրայի աճը 1953 թվականի առաջին կիսամյակում վառ կերպով վկայում են, որ ՍՍՌՄ զարգացման հինգերորդ հնգամյա պլանի վերաբերյալ ՍՄԿՊ 19-րդ համագումարի դիրեկտիվներում առաջադրված խնդիրները հաջողությամբ կատարվում են։

Օրերս մամուլում հրապարակվեց ՍՍՌՄ Մինիստրների Սովետին կից Կենտրոնական վիճակագրական վարչության հաղորդագրությունը ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1953 թվականի առաջին կիսամյակի պետական պլանի կատարման արդյունքների մասին, որտեղ ցույց է տրված



արդյունաբերության, գյուղատնտեսության և տրանսպորտի զարգացումը, կապիտալ շինարարության աճը, ապրանքաշրջանառության ծավալումը, բանվորների ու ծառայողների թվի ավելացումը և կուլտուրական շինարարությունը 1953 թվականի առաջին կիսամյակում։

Հաղորդագրության մեջ բերված թվերն ու փաստերը ցույց են տալիս այն խոշոր հաջողությունները, որ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ ձեռք է բերել մեր ժողովուրդը երկրի տնտեսական նոր վերելքի ասպարեզում՝ հինգերորդ հնգամյակի երրորդ տարվա առաջին կիսամյակում։

Հաղորդագրության մեջ ասված է, որ **համախառն արտադրանքի** արտադրության առաջին կիսամյակի պլանը արդյունաբերությունն ամբողջությամբ վերցրած կատարել է 100 տոկոսով։ ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը 1953 թվականի առաջին կիսամյակում, 1952 թվականի առաջին կիսամյակի համեմատությամբ, աճել է 10 տոկոսով։

1953 թվականի առաջին կիսամյակում գերակատարված է ածխի, թերթաքարերի, նավթի, էլեկտրաէներգիայի, հիդրոգեներատոր-

ների, մետաղահատ հաստոցների, ավտոմոբիլների, կոմբայնների, բարդ կալսիչների, ինչպես նաև քիմիական, թեթև և սննդի արդյունաբերության արտադրանքի այլ տեսակների արտադրության պլանները։ Բարելավվել է սարքավորման օգտագործումը նավթարդյունաբերության, մետալուրգիական, ցեմենտի, թղթի և մետաքսե գործվածքների արդյունաբերության մեջ, իջել է արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքը մոտ 4 տոկոսով։ Արդյունաբերության մեջ աշխատող բանվորների աշխատանքի արտադրողականությունը այս տարվա առաջին կիսամյակում, 1952 թվ. առաջին կիսամյակի համեմատությամբ, աճել է 5 տոկոսով։

Խոշոր հաջողություններ են ձեռք բերել նաև սոցիալիստական գյուղատնտեսության աշխատողները։ Կոլտնտեսությունները, ՄՏ կայանները և սովխոզները հաջողությամբ անցկացրին գարնանացանը և կատարեցին գարնանացան կուլտուրաների ցանքի պլանը։ 1953 թվականի բերքի ցանքատարածությունը անցյալ տարվա համեմատությամբ ավելացել է։ Զգալիորեն ընդարձակվել է առավել արժեքավոր հացահատիկային կուլտուրայի՝ ցորենի և տեխնիկական կուլտուրաների ցանքատարածությունը։



ՄՏ կայանները, սովխոզները և կոլտնտեսությունները այս տարի բերքահավաքն սկսեցին տեխնիկայով էլ ավելի հագեցված, քան 1952 թվականին։ Հացահատիկային կոմբայնների թիվը առ 1-ը հուլիսի 1953 թվականի, 1952 թվականի հուլիսի 1-ին եղած թվի համեմատությամբ, ավելացել է 10 տոկոսով, այդ թվում ինքնագնաց կոմբայններինը՝ 33 տոկոսով, տրակտորային և ինքնագնաց խոտհնձիչների թիվն աճել է 42 տոկոսով։ Կոլտնտեսություններում և սովխոզներում ավելացել է հանրային անասունների գլխաքանակը։

Սովետական Միությունում մեծ թափ է ստացել կապիտալ շինարարությունը։ Պետական կապիտալ շինարարության ծավալը 1953 թվականի առաջին կիսամյակում, 1952 թվականի առաջին կիսամյակի դիմաց, կազմել է 104 տոկոս։ Կապիտալ աշխատանքների ծավալը ընթացիկ տարվա առաջին վեց ամսում, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, կազմել է բնակարանային շինարարության գծով 107 տոկոս, դպրոցական շինարարության գծով՝ 117 տոկոս, հիվանդանոցների ու պոլիկլինիկաների շինարարության գծով՝ 116 տոկոս։

Արդյունաբերության և գյուղատնտեսու-

թյան աճման հիման վրա անշեղորեն բարձրանում է ՍՍՌՄ աշխատավորների նյութական բարեկեցությունը։ Մարքսիզմ-լենինիզմը սովորեցնում է, որ սոցիալիստական արտադրության նպատակը ոչ թե շահույթն է, այլ մարդը՝ իր պահանջմունքներով, այսինքն նրա նյութական և կուլտուրական պահանջմունքների առավելագույն բավարարումը։ Ժողովրդի պահանջմունքների բավարարման ասպարեզում մեր պարտիայի անդուլ հոգատարության վառ ապացույցն են այն թվերն ու փաստերը, որոնք նշված են ՍՍՌՄ Մինիստրների Սովետին կից Կենտրոնական վիճակագրական վարչության հաղորդագրության մեջ։

1953 թվականի առաջին կիսամյակում շարունակվում էր սովետական առևտրի հետագա ծավալումը. պետական և կոոպերատիվ առևտրի գծով բնակչությանը վաճառվել են 15 տոկոսով ավելի շատ ապրանքներ, քան 1952 թվականի առաջին կիսամյակում, իսկ 1953 թվականի երկրորդ եռամսյակում բնակչությանը վաճառվել են 23 տոկոսով ավելի շատ պարենային և արդյունաբերական ապրանքներ, քան անցյալ տարվա նույն ժամանակաշրջանում։

Ընթացիկ տարվա առաջին կիսամյակում,



անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, պարենային և արդյունաբերական ապրանքների վաճառքը ավելացել է՝ միս և մսամթերքներ՝ 30 տոկոսով, կենդանական յուղ՝ 26 տոկոսով, բուսական յուղ և այլ սննդաճարպեր՝ 14 տոկոսով, պանիր՝ 23 տոկոսով, շաքար՝ 25 տոկոսով, բամբակյա գործվածքներ՝ 14 տոկոսով, մետաքսե գործվածքներ՝ 34 տոկոսով, հագուստ՝ 29 տոկոսով, տրիկոտաժեղեն՝ 24 տոկոսով, կաշվե կոշկեղեն՝ 24 տոկոսով, կարի մեքենաներ՝ 32 տոկոսով, մարդատար ավտոմոբիլներ՝ 72 տոկոսով և այլն։

1953 թվականի առաջին կիսամյակում բանվորների և ծառայողների թիվը, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, ավելացել է մեկ միլիոն 150 հազարով։

Խոշոր նվաճումներ է ձեռք բերված կուլտուրական շինարարության և առողջապահության բնագավառում։ Ընթացիկ տարում միջնակարգ և յոթնամյա դպրոցներն ավարտողների թիվը 18 տոկոսով ավելի է, քան անցյալ տարի, իսկ հասունության ատեստատներ ստացողների թիվը ավելացել է 37 տոկոսով։ ԲՈՒՀ-երը և տեխնիկումները ըն-

թացիկ տարում տալիս են ավելի քան կես միլիոն երիտասարդ մասնագետներ։

Այս տարվա առաջին կիսամյակում հրատարակված գրքերի տիրաժը 20 տոկոսով ավելի է անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ։

1953 թվականի առաջին կիսամյակում շարունակվում էր բնակչությանը ցույց տրվող ձրի բժշկական օգնության հետագա բարելավումն ու զարգացումը։ Արդեն 20 միլիոն մարդ օգտագործել են հերթական արձակուրդները, որոնք ամեն տարի տրվում են բանվորներին և ծառայողներին՝ պահպանելով աշխատավարձը։

Տնտեսական և կուլտուրական շինարարության ասպարեզում մեր հաջողությունները անընդհատ բազմապատկվում են։ Կոմունիստական շինարարության շահերը սովետական մարդուց պահանջում են է՛լ ավելի հաստատակամ պայքարել ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման հետագա վերելքի համար։ Մեր երկրի աշխատավորները ավելի ու ավելի լայնորեն են ծավալում սոցիալիստական մրցությունը և իրենց ստեղծագործական ակտիվությունն ուղղում են հինգերորդ հնգամյակի կատարմանն ու գերակատարմանը։

---

# ԵՐԿԱԹՈՒՂԱՅԻՆԻ ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՕՐԸ

Մոտ քսան տարի սրանից առաջ Ի. Վ. Ստալինը մեր երկիրն անվանեց երկաթուղային մեծ տերություն։ Նա միաժամանակ նշեց այն հսկայական դերը, որ կատարում է ժողովրդական տնտեսության մեջ երկաթուղային տրանսպորտը։

Սովետական երկիրը, որ աշխարհի ամենամեծ տերությունն է, տարածվում է Բալթիկայի ափերից մինչև Խաղաղ օվկիանոս, Հյուսիսային ծովերից մինչև Դանուբ։ Այդ վիթխարի տերիտորիայի վրա փռված են մեր հազարավոր քաղաքներն ու գյուղերը, մեր հանքերն ու գործարանները, կոլտնտեսություններն ու սովխոզները։ Դրանց իրար կապող լավագույն միջոցը տրանսպորտն է։

Բոլոր տեսակի փոխադրումների 80 տոկոսը մեր երկրում կատարվում է երկաթուղային տրանսպորտի միջոցով։

Անհնարին կլիներ երկրի էկոնոմիկայի

հետագա զարգացումը, առանց արդյունաբերական կենտրոնները գյուղատնտեսական ռայոններին միացնող երկաթուղային ճանապարհների խիտ ցանցի։

Վ. Ի. Լենինը ասել է, որ երկաթուղային տրանսպորտը արդյունաբերության և գյուղատնտեսության, քաղաքի և գյուղի միջև եղած կապի ամենավառ արտահայտությունն է։

Անցած երեք ու կես տասնամյակների ընթացքում երկաթուղային տրանսպորտը մեր երկրում աճել է ավելի քան երկու անգամ։ Երկաթուղային ճանապարհների շինարարությունը չէր դադարել նույնիսկ Հայրենական պատերազմի ամենադժվարին տարիներին։

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը ոչինչ չեն խնայում երկաթուղային տրանսպորտի անընդհատ աճի ու զարգացման համար։ Այդ նպատակի համար ամեն տարի ծախսվող միլիարդի դումարների շնորհիվ ինչպես մինչև պատերազմը, այնպես էլ պատերազմից հետո, կառուցվել են բազմաթիվ նոր ճանապարհներ, որոնք միացնում են երկրի ամենահեռավոր մասերը արդյունաբերական կենտրոնների հետ։ Այժմ պողպատե գծերը անցնում են



նույնիսկ այնպիսի վայրերով, որոնք դարեր շարունակ անմատչելի են եղել։

Մեր Հայրենիքի երկաթուղային տրանսպորտը զգալի հաջողությունների հասավ հետպատերազմյան հնգամյակների տարիներին։

Հայտնի է, որ պատերազմի հետևանքով քանդվել էր մեր երկաթուղագծերի մի զգալի մասը, ավերվել էին բազմաթիվ կայարաններ։ Սովետական մարդկանց անձնվեր աշխատանքի շնորհիվ կարճ ժամանակամիջոցում մեզ հաջողվեց բուժել պատերազմի պատճառած վերքերը, արագ կերպով վերականգնվեցին ոչ միայն քանդված ճանապարհներն ու կործանված կայարանները, այլև կառուցվեցին բազմաթիվ նոր գծեր, կամուրջներ, բարեկարգ կայարաններ։ Նոր երկաթուղագծեր կառուցելու ուղղությամբ առանձնապես շատ աշխատանք է կատարվել երկրի հյուսիսում և Միջին Ասիայում։

Հետպատերազմյան տարիներին զգալի չափով աճեց երկաթուղային ճանապարհների էլեկտրիֆիկացիան։ Էլեկտրիֆիկացված են Ուրալի, Անդրկովկասի, Կրիվոյ Ռոգի, ինչպես նաև մի շարք քաղաքամերձ ռայոնների երկաթուղագծերի մի զգալի մասը։

Սովետական Միության երկաթուղային տրանսպորտը տարեցտարի է՛լ ավելի է զին-

վում ու հզորանում տեխնիկապես։ Հայրենական արդյունաբերությունը մատակարարում է նրան նորագույն շոգեքարշեր, էլեկտրաքարշեր, ապրանքատար ու մարդատար վագոններ և մի շարք այլ կատարելագործված սարքավորումներ։

Երկաթուղային տրանսպորտի հետագա զարգացման համար մղվող պայքարում աճեցին ու կոփվեցին կադրեր, որոնք ամենուրեք հանդես են բերում արժեքավոր նախաձեռնություններ։ Պետական առաջադրանքների կատարման ու գերակատարման համար ծավալված սոցիալիստական մրցությունը տալիս է հրաշալի արդյունքներ։ Մրցողների ավանգարդում գտնվում են մեր Հայրենիքի մայրաքաղաք Մոսկվայի երկաթուղայինները։ Մոսկվացիների օրինակին, մյուսների թվում, հետևում են նաև Երևանի բաժանմունքի աշխատողները։ Նրանք մրցելով եղբայրական ռեսպուբլիկաների՝ Ադրբեջանի և Վրաստանի երկաթուղայինների հետ, բեռների փոխադրման կիսամյակի պլանը կատարել են 103,4 տոկոսով, անցյալ տարվա համեմատությամբ զգալիորեն կրճատել են վագոնների պարապուրդը։ Երևանի կայարանը այժմ համարվում է Միության առաջավոր կայարաններից մեկը։



Մեծ հեռանկարներ են բացված երկաթուղային տրանսպորտի առաջ հինգերորդ հնգամյակում։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման նոր հնգամյա պլանի վերաբերյալ դիրեկտիվները, որոնք ընդունվեցին Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 19-րդ համագումարի կողմից, նախատեսում են տրանսպորտի հետագա թռիչքը, հնգամյակի ընթացքում տրանսպորտի բեռնաշրջանառությունը ավելանալու է մոտ 46 տոկոսով, այդ թվում երկաթուղային տրանսպորտի բեռնաշրջանառությունը կաճի 35—40 տոկոսով։

Բեռների փոխադրման աճը պայմանավորվում է երկաթուղային ճանապարհների բեռնալարվածությամբ, այդ կապակցությամբ երկաթուղային տրանսպորտի կարևորագույն խնդիրն է՝ ավելացնել գծերի թողարկման կարողությունը։

Անցյալ հնգամյակի համեմատությամբ այս հնգամյակում նախատեսվում է երկրորդ ուղիների գործարկումն ավելացնել մոտավորապես 60 տոկոսով և էլեկտրիֆիկացված երկաթուղիները՝ 4 անգամ։ Կայարանային ուղիների երկարությունը ավելացնել հասցնել երկաթուղիների շահագործվող երկարության

մոտավորապես 46 տոկոսին։ Հսկայական չափերով ավելանալու է նոր գծերի կառուցումը, կավարտվի Հարավ-Սիբիրյան մագիստրալի՝ Աբականից մինչև Ակմոլինսկ տեղամասի և Ջարջուր-Կունգրադ երկաթգծի շինարարությունը։ Նոր հնգամյակում կկառուցվեն և շահագործման կհանձնվեն մոտ 2,5 անգամ ավելի նոր երկաթուղիներ, քան նախորդ հնգամյակում։

Նախատեսվում է երկաթուղային ճանապարհների զինումը սիգնալիզացիայի, ավտոմատիզացիայի և բլոկիրովկայի նորագույն սարքավորումներով, որոնք կապահովեն փոխադրումների կարողության ավելացումը և երթևեկության անվտանգությունը։

Նախատեսված է բարելավել երկաթուղիների գծային տնտեսության վիճակը։ Նոր հնգամյակում երկաթուղային տրանսպորտը ստանալու է մոտավորապես 85 տոկոսով ավելի շատ նոր ռելսեր, քան 1946—1950 թվականներին։ Հինգերորդ հնգամյակում լրիվին ապահովվելու է երկաթուղային տրանսպորտի պահանջը մագիստրալային շոգեքարշերի, էլեկտրաքարշերի, ջերմաքարշերի, բեռնատար իզոթերմիկ և մարդատար վագոնների գծով։ 1955 թվականին վագոնների շրջապտույտի ժամանակը, 1950 թվականի համեմատու-



թյամբ կրճատվելու է առնվազն 18 տոկոսով և շոգեքարշերի միջին օրական վազքը ավելանալու է ոչ պակաս, քան 12 տոկոսով, ինչպես նաև բարելավվելու է վագոնների բեռնատարողության օգտագործումը և ավելանալու է բեռնատար գնացքների քաշը։ Հինգերորդ հնգամյակի առաջադրանքների անթերի կատարման համար մղվող պայքարը ամեն օր ծնում է նոր նախաձեռնություններ, որոնց նպատակն է բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, բազմապատկել երկաթուղային տրանսպորտի հզորությունը։

Սովետական Միության աշխատավորները մեծ խանդավառությամբ տոնելով երկաթուղայինի Համամիութենական օրը, հանրագումարի են բերում իրենց կատարած աշխատանքը՝ երկաթուղային տրանսպորտի զարգացման բնագավառում, վեր են հանում եղած թերություններն ու խոչընդոտները, նշում են դրանք հաղթահարելու ուղիները։

Զինված Կոմունիստական պարտիայի 19-րդ համագումարի որոշումներով, մեր երկրի երկաթուղային տրանսպորտի աշխատողների վիթխարի բանակը պայքարում է նոր, ավելի փայլուն հաղթանակների համար։

---

# ԲԱՄԲԱԿԻ ՄՇԱԿՈՒԹՅԱՆ ՈՒՍԱՆԵԼԻ ՓՈՐՁ

Էջմիածնի շրջանի Միկոյանի անվան Լենինի շքանշանակիր կոլտնտեսության դաշտավարական № 4 բրիգադան տարիներ շարունակ պատվով է կատարում իր պարտքը հարազատ Հայրենիքի հանդեպ։ Բրիգադայի անդամները սեփական փորձով համոզվել են, որ բարձր բերք աճեցնելու համար անհրաժեշտ է ժամանակին, ճշգրիտ, լրիվ և բարձր որակով կիրառել ագրոտեխնիկական միջոցառումների ամբողջ կոմպլեքսը, ճիշտ օգտագործել գյուղատնտեսական տեխնիկական միջոցները, խելացիորեն պլանավորել ու կազմակերպել աշխատանքը։ Բրիգադան վերջին 4—5 տարիների ընթացքում 30—40 հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից ստացել է 30—35 ցենտներ բամբակի միջին բերք։

Ո՞րն է բրիգադայի աշխատանքի փորձը, որո՞նք են բամբակենու մշակության այն



եղանակները, որ կիրառել ու կիրառում են բրիգադայի կոլտնտեսականները։

Այս բրիգադայում մեծ կարևորություն է տրվում հողի կուլտուրական մշակմանը։ Բամբակենու նախացանքային աշխատանքները, նրա ցանքն ու մշակությունը կատարվում են ճիշտ ժամանակին ու խնամքով, խստորեն պահպանելով ագրոկանոնները։ Անցած տարի դեռ ապրիլի 19-ին բրիգադայում ավարտվեց բամբակի ցանքը, այնուհետև բրիգադայի բոլոր անդամների ջանքերն ուղղվեցին ժամանակին, միահավասար և առողջ ծիլեր ստանալուն։ Դրա համար առանձնահատուկ նշանակություն տրվեց ծլաջրին, որից կախված է միահավասար ու առողջ ծիլեր ստանալը։ Ծլաջուրը կատարվեց դանդաղ հոսանքով, ջուրը ակոսների մեջ բաց թողնվեց միահավասար կերպով։ Բրիգադիրը անձամբ հետևում էր ծլաջրին։ Դրանով էլ պետք է բացատրել, որ բամբակենու պլանտացիաներում հողի կեղևակալում տեղի չունեցավ, ապահովվեց բույսերի հավասար ծլումը և հեկտարների լիարժեքությունը։

Երբ երևացին բամբակենու առաջին ծիլերը, բամբակագործներն անմիջապես ձեռնամուխ եղան շարքերի բաց մնացած տե-

ղերում բնային ցանք կատարելուն։ Դրանից անմիջապես հետո սկսվեց առաջին նոսրացումը, ապա երկրորդը, որն ավարտվեց մայիսի 30-ին։

Բրիգադան և անձամբ նրա բրիգադիր Մ. Ծղիազարյանը սերտ կապ ունենալով Տեխնիկական կուլտուրաների գիտահետազոտական ինստիտուտի գիտական աշխատողների հետ, լայնորեն կիրառում է նրանց խորհուրդներն ու գիտության հարուստ փորձը։ Բրիգադան միշտ ստանում է ինստիտուտի գիտական աշխատողներ Գ. Մելքումյանի և մյուսների մասնագիտական օգնությունը։ Այսպես, դեռ անցած տարի ինստիտուտի գիտական աշխատողների օգնությամբ բրիգադայում նոսրացումը կատարվեց ոչ թե աչքաչափով, այլ փայտյա չափերի օգնությամբ, որոնց վրա նշանակված էին միահավասար միջբնային տարածությունները։ Խստորեն պահպանելով ագրոկանոնները, բրիգադան վերջնական նոսրացման ժամանակ բներում թողեց մեկական բույս՝ 12—13 սանտիմետր հեռավորությամբ։ Դրա հետևանքով հեկտարում ապահովվեց բույսերի պլանային քանակը, բամբակենին փարթամորեն աճեց ու առատորեն պտղակալեց։



№ 4 բրիգադայի կոլտնտեսականները երկար տարիների աշխատանքի փորձից գիտեն, թե որքան մեծ նշանակություն ունի բամբակենու մշակության հաջորդականության պահպանումը։ Ահա թե ինչու բամբակենու շարքերը նշմարվելուց անմիջապես հետո սկսվեց առաջին կուլտիվացիան ու քաղհանը, որը կատարվեց սահմանված ճիշտ ժամկետներում, դրանով իսկ պահպանվեց դաշտերի փուխր վիճակը։ Այդ կարգով 40 հեկտար տարածության վրա բամբակի 5 կուլտիվացիա կատարվեց, 6 քաղհան և 9 ոռոգում։ Մինչև բամբակենու ծաղկումը տրվեց 2 ջուր, ծաղկման շրջանում՝ 5 և բամբակի հասունացման շրջանում՝ 2 ջուր։

Բրիգադայում առանձնակի ուշադրություն դարձվեց բամբակենու սնուցմանը հանքային պարարտանյութերով։ Ամռան ընթացքում բամբակի դաշտերը ստացան լիարժեք սնուցում, ըստ որի առաջին սնուցումը տրվեց կոկոնակալման շրջանում, երկրորդը՝ բամբակենու ծաղկման սկզբին և երրորդը՝ բամբակենու մասսայական ծաղկման շրջանում, ամեն անգամ յուրաքանչյուր հեկտարին տալով 30 կիլոգրամ ազոտ։ Սնուցման ընթացքում կիրառվեց պարարտանյութը շարքերի երկու կողմից մտցնելու արդյու-

նալետ եղանակը, որի առավելությունները մեծ են բերքատվության բարձրացման տեսակետից: Սնուցման տեխնիկան պահպանելու և սահմանված ժամկետները չխախտելու հետևանքով զգալիորեն պակասեց պտղաթափումը, զգալիորեն արագացվեց բերքի հասունացումը:

Բրիգադան տարիների ընթացքում սեփական փորձից համոզվել է, թե որքան մեծ նշանակություն ունի վնասատուների ու հիվանդությունների դեմ տարվող հաջող պայքարը: Այստեղ բուժումը կատարվել է ժամանակին ու արդյունավետ կերպով, իսպառ կանխվել է բամբակենու բարձր բերքին սպառնացող վտանգը: Վերջին սնուցման ժամանակ կատարվեց նաև բամբակենու ծերատումը, որը կարևոր ագրոձեռնարկում է: Ծերատումը մեծ չափերով նպաստում է մնացած կնգուղների է՛լ ավելի մեծանալուն: Բացի այդ, այդ միջոցառումը արագացնում է նաև բամբակենու հասունացումը:

Կոլտնտեսության № 4 դաշտավարական բրիգադան գործը ավելի լավ է կազմակերպել այս տարի: Մեխանիզատորներն ու կոլտնտեսականները՝ զինված սովետական առաջավոր գիտությամբ, երկրի անվանի



բամբակագործների հարուստ փորձով, համագործակցված եռանդուն աշխատանք են կատարում: Նրանք ջանասեր ու անխոնջ աշխատանքով, ամեն կերպ ամրապնդելով անցած տարվա նվաճումները, հաստատուն նախադրյալներ են ստեղծում ընթացիկ տարում 50 հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից 40 ցենտներ բամբակ ստանալու համար: Տարիների ընթացքում կուտակած հարուստ փորձը ավելի խորացնելով, բրիգադայի անդամները վաղ գարնանից ձեռնամուխ են եղել բարձր բերքի համար մղվող պայքարին՝ բամբակենու ցանքը, նրան հաջորդող մշակությունները կատարվել ու կատարվում են սահմանված ճիշտ ժամկետներում, ագրոտեխնիկական կանոններին համապատասխան: Ի տարբերություն անցած տարվա, բրիգադան այս տարի բամբակենու ցանքը կատարել է չիզելացված ցրտահերկի վրա: Ցանքի ու ծլաչրի աշխատանքները կատարվել են ապրիլ ամսվա երկրորդ կեսին: Ամենուրեք ստացվել են միահավասար և առողջ ծիլեր: Բրիգադան մինչև հուլիսի 18-ը կուլտիվացիա ու քաղհան է կատարել չորս անգամ, ջուր՝ երկու անգամ, կոմբինացված բուժում՝ լվիճի ու ոստայնատիզի դեմ՝ մեկ անգամ: Բացի այդ,

արդեն կատարվել է երկու սնուցում, որից մեկը կոկոնակալման ժամանակ, իսկ մյուսը՝ բամբակենու ծաղկման շրջանի սկզբում։ Սնուցումը կատարվել է «ՍՏՁ» մեքենայով։

Բրիգադայում այս տարի ավելի մեծ չափերով է կիրառվում բամբակենու մշակությունների մեքենայացումը։ № 1 ՄՏ կայանի մեխանիզատոր Մ. Կարապետյանը, ինչպես ցանքը, այնպես էլ մյուս աշխատանքները կատարում է ճիշտ ժամանակին ու բարձր որակով։ Նրանից գոհ են բոլորը։ Նա մեծ չափերով թեթևացնում է կոլտնտեսականների կողմից ձեռքով կատարվող աշխատանքը։ Գնալով ավելի ու ավելի է ամրապնդվում մեխանիզատորների ու կոլտնտեսականների համագործակցությունը։ Բրիգադայի բարձր բերքի օղակավարներ Գ. Մանուկյանը, Քնարիկ և Վարդուշ Առաքելյանները անընդհատ բարելավում են ցանքերի մշակությունը։ Արդեն բամբակենին մասսայորեն ծաղկում է և այժմվանից ծանրաբեռնվում առատ բերքով։

Բարձր բերք աճեցնելու գործում մեծ դեր է խաղում կոլտնտեսականների տարիների ընթացքում կուտակած աշխատանքի հարուստ փորձը։ Նրանք տիրապետում են բամբակագործության տեխնիկային, նրանց մեծ



մասը, ինչպես, օրինակ, Գ. Չիֆտիկյանը, Ա. Այվազյանը, Գ. Մանուկյանը և ուրիշներ սովորել ու ավարտել են ագրոզոոուսուցման եռամյա դասընթացները, հարստացնելով իրենց գիտելիքները։ Բրիգադայում ճիշտ է կազմակերպված աշխատանքը։ Ոչ մի կոլտնտեսական աշխատանքից չի բացակայում։ Բրիգադայի յուրաքանչյուր կոլտնտեսական արդեն տիրապետում է իր գործի տեխնիկային և վաղ գարնանից մինչև ուշ աշուն եռանդուն աշխատանք կատարում մեր հարազատ Հայրենիքին ավելի շատ բամբակ տալու համար։

Հ. ԱՍՏԱԲԱՑՅԱՆ

# ԼԵՀԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱ

Լեհական Ժողովրդական Ռեսպուբլիկայի աշխատավորները ամեն տարի նշում են հուլիսի 22-ի օրը՝ հիտլերյան օկուպացիայի լծից իրենց հայրենիքի ազատագրման տոնը, Լեհաստանի վերածնության տոնը։ Այդ օրը, 1944 թվականին, Լեհական ազգային ազատագրության կոմիտեն հրապարակեց ժողովրդին ուղղված իր Մանիֆեստը, որի մեջ տվեց նոր, անկախ և դեմոկրատական ռեսպուբլիկայի շինարարության ծրագիրը։

Լեհական հողերը ֆաշիստական օկուպանտներից ազատագրեց քաջարի Սովետական Բանակը, որի հետ ուս-ուսի թշնամու դեմ կռվում էին նորաստեղծ Լեհական Զորքի զորամասերը։

Ֆաշիզմի դեմ մղած համատեղ պայքարում ծնունդ առած լեհ-սովետական բարեկամությունը վճռական նշանակություն ունեցավ ժողովրդա-դեմոկրատական պետու-



թյան ստեղծման ու ամրապնդման համար։ Սովետական Միության հզոր պաշտպանության շնորհիվ լեհ ժողովուրդը ետ ստացավ արևմուտքի իր վաղեմի հողերը, որոնք երկար ժամանակ գտնվում էին գերմանական զավթիչների լծի տակ, և ետ մղեց միջազգային ու ներքին ռեակցիայի փորձերը՝ երկրի վզին փաթաթելու հին ռեակցիոն ռեժիմը։




ԼԵՀԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱ
50 0 50 100կմ

Նոր Լեհաստանի ժողովրդա-դեմոկրատական իշխանությունը անցկացրեց ռևոլյուցիոն հողային ռեֆորմ, հողը խլեց կալվածատերերից և հանձնեց գյուղացիներին, ազգայնացրեց խոշոր ու միջին արդյունաբերությունը, տրանսպորտն ու բանկերը։ Հենվելով Սովետական Միության անշահախնդիր եղբայրական օգնության վրա, օգտագործելով ՍՍՌՄ-ում սոցիալիստական շինարարության փորձը, լեհ ժողովուրդը կանգնեց ազատ ու երջանիկ կյանքի ստեղծման ուղու վրա, սոցիալիզմի ուղու վրա։

Իր տերիտորիայով Լեհաստանը ժողովրդական դեմոկրատիայի եվրոպական երկրներից ամենախոշորն է։ Նրա տարածությունը հավասար է համարյա 312 հազար քառակուսի կիլոմետրի։

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո, սահմանների փոփոխման շնորհիվ, Լեհաստանը բարելավեց իր ելքը դեպի Բալթիկ ծով, որտեղ նա ներկայումս ունի երեք առաջնակարգ նավահանգիստ՝ Գդանսկը, Գդինիան և Շչեցինը։

Այժմ Լեհաստանի հարևաններն են՝ Սովետական Միությունը, ժողովրդա-դեմոկրատական Չեխոսլովակիան և Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկան։ Այսպիսով,



Լեհաստանը իր ամբողջ ցամաքային սահմանով հարևան է բարեկամ պետությունների հետ, մի բան, որ առաջ բնավ չի եղել նրա պատմության մեջ։

Երկրի մեծ, հյուսիսային մասը հարթավայր է։ Հարավում, Չեխոսլովակիայի սահմանի մոտ բարձրանում են Կարպատյան և Սուդետյան լեռները։ Դրանց նախալեռներում և դեպի հյուսիս ընկած բարձրավանդակներում կենտրոնացված են Լեհաստանի գլխավոր հանքային հարստությունները։ Ռեսպուբլիկայի Վերին Սիլեզիայի ավազանը իր ածխի պաշարներով համարյա չի զիջում Ռուրին։ Չափազանց նշանակալից են երկրի կապարի-ցինկի հանքավայրերը։ Քարաղի պաշարները հասնում են 6 միլիարդ տոննայի։ Ռեսպուբլիկան հարուստ է անտառներով, որոնցով պատված է նրա տերիտորիայի ավելի քան մեկ հինգերորդական մասը։

Բնակչության թվով նույնպես Լեհաստանը ժողովրդական դեմոկրատիայի եվրոպական երկրներից ամենախոշորն է։ 1950 թվականի մարդահամարը պարզեց, որ նա ունի մոտ 25 միլիոն բնակիչ։ Պատերազմի տարիներին Լեհաստանը կորցրեց ավելի քան 6 միլիոն մարդ, այսինքն՝ բնակչության մեկ

հինգերորդական մասը։ Ֆաշիստական օկուպանտները գազանաբար կոտորում էին երկրի բնակչությանը և ավերում քաղաքները։ Լեհաստանի մայրաքաղաք Վարշավան փլատակների կույտի էր վերածվել։ Ներկայումս Վարշավան արագորեն վերականգնվում է։ ՍՍՌՄ ուժերով ու միջոցներով Վարշավայում կառուցվում է Կուլտուրայի և գիտության պալատ։ Այդ հիանալի բարձրաբերձ շենքը կլինի սովետական ժողովրդի եղբայրական նվերը լեհ ժողովրդին։ Վարշավայում հաջողությամբ է ընթանում նաև մետրոյի կառուցումը։

Երկրի երկրորդ խոշորագույն քաղաք Լոձը տեքստիլ արդյունաբերության և տեքստիլ մեքենաշինության կենտրոն է։

Արագորեն աճում է հնագույն Կրակովը։ Կրակովի մոտ կառուցվում է Նովայա Գուտայի վիթխարի մետալուրգիական կոմբինատը։ Այդ ձեռնարկությունը տարեկան կարտադրի մեկ և կես միլիոն տոննա պողպատ, այսինքն՝ ավելի շատ, քան արտադրում էր հին Լեհաստանի ամբողջ մետալուրգիան։ Ռեսպուբլիկայի խոշորագույն քաղաքների թվին են պատկանում նաև Պոզնանը, Վրոցլավը, Ստալինոգրուդը՝ Սիլեզա-



դոմբրովյան ածխա-մետալուրգիական շրջանի կենտրոնը։

***

Մինչպատերազմյան Լեհաստանը էկոնոմիկական տեսակետից Եվրոպայի հետամնաց պետություններից մեկն էր։ Կապիտալիստական մոնոպոլիաները թալանում և դաժանորեն շահագործում էին լեհ ժողովրդին։ 1938 թվականին երկրում գործում էին ավելի քան հարյուր միջազգային կապիտալիստական միավորումներ։ Օտարերկրյա բանկերն ու մոնոպոլիաները փաստորեն վերահսկում էին մինչպատերազմյան Լեհաստանի ամբողջ արդյունաբերությունը։

Վ. Ի. Լենինը 1919 թվականին գրել է. «Լեհաստանը գնվում է Ամերիկայի գործակալների կողմից։ Չկա ո՛չ մի ֆաբրիկա, ո՛չ մի գործարան, արդյունաբերության ոչ մի ճյուղ, որոնք ամերիկացիների գրպանում չլինեն»։

Մինչպատերազմյան Լեհաստանը խոշոր հողատեր-կալվածատերերի և աղքատ սակավահող գյուղացիության երկիր էր։

Պատերազմի և $5^1/_2$ տարի տևած ֆաշիստական օկուպացիայի հետևանքով Լեհաստանի տնտեսությունը խիստ քայքայվեց։

Այդ պատճառով էլ պատերազմից հետո Ժողովրդական Լեհաստանի աշխատավորների առաջին հոգսը եղավ երկրի վերականգնումը։

Այդ կարևորագույն նպատակին էր ծառայում ռեսպուբլիկայի առաջին եռամյա պլանը, որը գործողության մեջ մտավ 1947—1949 թվականներին։ Եռամյա պլանը հաջողությամբ և ժամկետից շուտ կատարելու շնորհիվ արդյունաբերական արտադրության ծավալը Ժողովրդական Լեհաստանում արդեն 1949 թվականին 75 տոկոսով գերազանցեց նախապատերազմյան մակարդակը։

Ներկայումս Լեհաստանի աշխատավորները մեծ խանդավառությամբ պայքարում են 1950—1955 թվականների վեցամյա պլանի կատարման համար։ Այդ պլանի գլխավոր քաղաքական ու էկոնոմիկական խնդիրը սոցիալիզմի հիմքերի կառուցումն է Ժողովրդական Լեհաստանում։ Վեցամյակի վերջում ռեսպուբլիկայում արդյունաբերական արտադրությունը կաճի ավելի քան $2^1/_2$ անգամ, իսկ գյուղատնտեսական մթերքների արտադրությունը՝ մեկ ու կես անգամ։

Սոցիալիստական մրցության լայն ծավալման շնորհիվ արդյունաբերական արտադրության աճը գերազանցում է վեցամյա



պլանի նախագծումներից։ 1952 թվականին արդյունաբերական արտադրանք թողարկվել է 14 տոկոսով ավելի, քան այդ տարվա համար նախատեսված է եղել վեցամյա պլանով։ Անցյալ տարի Լեհաստանում ավելի քան 3 անգամ գերազանցվեց արդյունաբերական արտադրության նախապատերազմյան մակարդակը, իսկ բնակչության յուրաքանչյուր շնչին ընկնող արտադրանքի հաշվով՝ այդ մակարդակը գերազանցվեց 4 անգամ։

Լեհական միացյալ բանվորական պարտիայի ղեկավարությամբ ռեսպուբլիկայի աշխատավորները հաջողությամբ կենսագործում են ինդուստրացման վիթխարի պլանը։ Լեհաստանը անցյալում հետամնաց ագրարային երկրից վեր է ածվել առաջավոր ինդուստրիալ-ագրարային երկրի։ Առանձնապես արագորեն է աճում նրա ծանր արդյունաբերությունը։ Բնակչության յուրաքանչյուր շնչի հաշվով ներկայումս 3 անգամ շատ ածուխ ու պողպատ է արտադրվում, քան պատերազմից առաջ, իսկ էլեկտրաէներգիա՝ 4 անգամ ավելի։ Ժողովրդական Լեհաստանը ածխի հանույթով արդեն 1951 թվականին բռնեց հինգերորդ տեղը աշխարհում, առաջ անցնելով Ֆրանսիայից

և Բելգիայից։ Լեհաստանը ներկայումս բը-
նակչության յուրաքանչյուր շնչի հաշվով ա-
վելի շատ արդյունաբերական ապրանքներ
է արտադրում, քան Իտալիան, և հավասար-
վում է Ֆրանսիայի ու Անգլիայի մակար-
դակին։

Անընդհատ աճում է սոցիալիստական
սեկտորի տեսակարար կշիռը ռեսպուբլիկա-
յի ժողովրդական տնտեսության մեջ։ Անց-
յալ տարի երկրի ամբողջ արդյունաբերա-
կան արտադրանքի 99,6 տոկոսը տվել է
սոցիալիստական արդյունաբերությունը։

Երկրի էկոնոմիկական զարգացման այդ-
քան բարձր տեմպերը անհնարին կլինեին
առանց Սովետական Միության բազմակող-
մանի օգնության։ Սովետական Միությունը
Լեհաստանին մատակարարում է սարքավո-
րում և հումք, մեծ օգնություն է ցույց տա-
լիս նոր ձեռնարկությունների նախագծման,
կառուցման և մոնտաժման գործում, կազ-
մակերպում է տեխնիկական կոնսուլտացիա
և նրան հաղորդում իր արտադրական փորձը։

Սոցիալիստական մրցությանը մասնակ-
ցում է բանվորների և ծառայողների ավելի
քան 85 տոկոսը։ Լեհական գործարաննե-
րում ու ֆաբրիկաներում կենդանի արձա-
գանք է գտնում սովետական առաջավոր



ստախանովականների նախաձեռնությունը։
Լեհաստանում լայն տարածում է ստացել
Ա. Ժանդարովայի և Օ. Ագաֆոնովայի,
Լ. Կորաբելնիկովայի, Գ. Բորտկևիչի, Վ. Կո-
լեսովի և արտադրության մյուս նորարար-
ների փորձը։

Ժողովրդական Լեհաստանը ամբողջովին
ծածկված է նորակառույցներով։ Միայն
1952 թվականի ընթացքում գործող ձեռնար-
կությունների շարքն է մտել 450 նոր գոր-
ծարան ու ֆաբրիկա։ Արագ տեմպերով է
զարգանում մեքենաշինությունը։ Անցյալ
տարի, օրինակ, յուրացվել է դազգահների
և արդյունաբերական այլ սարքավորման
մոտ 100 նոր տիպերի արտադրությունը։
Վերջերս սկսվեց ածխային կոմբայնների թո-
ղարկումը։ Նավաշինարաններում կառուցում
են ծովային նավեր։ Անցյալներում Լե-
հաստանը չի ունեցել իր ավտոմոբիլն ու
տրակտորը։ Իսկ այժմ հիանալի մեքենաներ
են արտադրում Ստարախովեցի, Վարշավա-
յի և Լյուբլինի ավտոգործարանները։ Այս
տարվա գարնանը Վարշավայի «Ուրսուս»
գործարանի կոնվեյերից դուրս եկավ
20-հազարերորդ տրակտորը։ Թե որքան մեծ
է դրա նշանակությունը, երևում է նրանից,
որ մինչպատերազմյան Լեհաստանում կար

ընդամենը 500 տրակտոր, որոնք աշխատում էին կալվածատիրական դաշտերում։

Ներկայումս մեծ վերելք է ապրում Լեհաստանի գյուղատնտեսությունը։ Հողային ռեֆորմի և վերամիավորված հողերում հաստատված բնակության շնորհիվ՝ լեհական գյուղացիությունն ստացավ մոտ 6 միլիոն հեկտար հող։ Արդեն 1951 թվականին լեհական գյուղը բնակչության յուրաքանչյուր շնչի հաշվով 42 տոկոսով շատ գյուղատընտեսական մթերքներ էր տալիս, քան պատերազմից առաջ։ 1952 թվականին է՛լ ավելի աճեց գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։

Լեհաստանի ինդուստրացումը անհրաժեշտ պայմաններ է ստեղծել երկրի գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման համար։ Ներկայումս Լեհաստանում գործում են արդեն 375 մեքենա-տրակտորային կայաններ։ Աշխատավոր գյուղացիությունը գնալով ավելի ու ավելի է համոզվում այն առավելությունների մեջ, որ ունի ագրոտեխնիկայի նորագույն նվաճումները կիրառող խոշոր կոլեկտիվ տնտեսությունը՝ անհատական տնտեսության հանդեպ։ Վերջին տարում երկրում ավելի քան երկու ան-



գամ աճել է հողագործական արտադրական կոոպերատիվների թիվը։

***

Արդյունաբերական ապրանքների և գյուղատնտեսական մթերքների արտադրության աճման հետ մեկտեղ անընդհատ բարձրանում է աշխատավորների բարեկեցությունը, բարգավաճում է լեհ ժողովրդի կուլտուրան։

Լեհաստանի ազգային եկամուտը վերջին հինգ տարում աճել է ավելի քան երկու անգամ։ Տարեցտարի բարձրանում է ժողովրդական սպառումը։ Այսպես, 1952 թվականին բնակչության յուրաքանչյուր շնչի համար համարյա մեկ և կես անգամ շատ շաքար է սպառվել, քան պատերազմից առաջ։ Նույն ժամանակամիջոցում մսի սպառումն ավելացել է համարյա կրկնակի չափով, բամբակե գործվածքներինը՝ 63 տոկոսով, մետաքսյա գործվածքներինը՝ 2 անգամ և այլն։

Այս տարվա սկզբից Լեհաստանում վերացվեց մատակարարման քարտային սիստեմը և 12—40 տոկոսով բարձրացվեց աշխատավարձը։ Բարձրացվեցին նաև կենսաթոշակները, բազմազավակ ընտանիքներին տրվող նպաստները և սովորողների թոշակները։ Այս ամենը վկայում է այն մեծ հո-

դատարության մասին, որ ցուցաբերում է Լեհաստանի ժողովրդական կառավարությունը աշխատավորների կենսամակարդակի բարձրացման նկատմամբ։

Հսկայական հաջողություններ են ձեռք բերվել գիտության և լուսավորության բնագավառում։ Բուրժուա-կալվածատիրական Լեհաստանում անգրագետները և կիսագրագետները կազմում էին բնակչության մոտ կեսը։ Ժողովրդական Լեհաստանում ո՛չ միայն տարրական, այլև յոթնամյա կրթությունը պարտադիր է դարձել։ Արդեն 1951 թվականին իսպառ վերացվեց անգրագիտությունը։

Հաջողությամբ կենսագործվում է նոր ժողովրդական ինտելիգենցիա ստեղծելու խնդիրը։ Ռեսպուբլիկայի 83 բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորում են 134 հազար ուսանող, որը 3 անգամ ավելի է, քան եղել է 1939 թվականին։

Ժողովրդական իշխանության տարիներին խոշոր փոփոխություններ են տեղի ունեցել Լեհաստանի յուրաքանչյուր աշխատավորի կյանքում։ Ահա թե ինչ է ասում այդ մասին նախկին ճախարակագործ, այժմ «Ուրսուս» տրակտորային գործարանի ցեխի պետ Ռոմուալդ Կոավչիկը.



«Առաջ ես ուրախանում էի, եթե շաբաթվա մեջ թեկուզ երեք-չորս օրվա աշխատանք էր ճարվում։ Այժմ մենք արդեն մոռացել ենք, թե ինչ ասել է գործազրկություն. բոլոր հասարակ մարդկանց առջև բացվել են նոր հորիզոններ։ Հենց ես, օրինակ, չկարողացա ուսում առնել, ոչ մի միջոց չունեի։ Այբուբենը ձեռքս վերցրի՝ արդեն հասակավոր մարդ դառած։ Բոլորովին այլ է իմ տղայի բախտը։ Նա պատրաստվում է դառնալ ինժեներ։ Ու կդա՛ռնա, դրա համար Լեհաստանում կան բոլոր հնարավորությունները»։

***

Լեհ ժողովրդի պատմության մեջ մեծ նշանակություն ունեցող ուղենիշ է հանդիսանում 1952 թվականի հուլիսի 22-ը, երբ Օրենսդրական սեյմը ընդունեց Լեհական Ժողովրդական Ռեսպուբլիկայի նոր կոնստիտուցիան։

Նոր կոնստիտուցիան հանրագումարի բերեց Լեհաստանի աշխատավոր մասսաների հսկայական նվաճումները։ Նա Լեհաստանը հռչակեց որպես ժողովրդական դեմոկրատիայի պետություն, որտեղ իշխանությունը պատկանում է քաղաքի և գյուղի աշխատավորներին։ Պետության հիմքն է կազմում բանվորների և աշխատավոր գյուղացիների

*դաշինքը։ Այդ դաշինքում ղեկավար դերը պատկանում է բանվոր դասակարգին, որը հենվում է «լեհական և միջազգային բանվորական շարժման ռևոլյուցիոն նվաճումների վրա, Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միությունում՝ բանվորների և գյուղացիների առաջին պետությունում հաղթական սոցիալիստական շինարարության պատմական փորձի վրա»։*

*Անցյալ տարի հոկտեմբերի 26-ին առաջին անգամ նոր կոնստիտուցիայի հիման վրա ընտրվեց պետական իշխանության բարձրագույն օրգանը՝ Լեհական Ժողովրդական Ռեսպուբլիկայի սեյմը։ Սեյմի 425 դեպուտատներից 173-ը բանվորներ են, 155-ը՝ գյուղացիներ։ Սեյմի դեպուտատների մեջ կա 74 կին։*

*Սեյմը միահամուռ կերպով Լեհաստանի Մինիստրների Սովետի նախագահ ընտրեց Լեհական միացյալ բանվորական պարտիայի Կենտկոմի նախագահ Բոլեսլավ Բերուտին։*

*Իր ամբողջ գործունեությունը խարսխելով մարքս-լենինյան ուսմունքի վրա, Լեհական միացյալ բանվորական պարտիան հանդիսանում է ռեսպուբլիկայի ճանաչված ղեկավար և ուղղություն տվող ուժը։*

*Բանվոր դասակարգի պարտիայի ղեկա-*



*վարությամբ լեհ ժողովուրդը վստահորեն ընթանում է իր երկրում սոցիալիզմի կառուցման ուղիով։ Այդ ճանապարհին ռեսպուբլիկայի աշխատավորներին հարկ է լինում ընկճել ջախջախված շահագործող դասակարգերի մնացորդների կատաղի դիմադրությունը, մերկացնել և վնասազերծ անել լրտեսներին ու մարդասպաններին, որոնց ժողովրդական Լեհաստան են ուղարկում ամերիկյան հետախուզությունը և մյուս կապիտալիստական պետությունների հետախուզությունները։*

*Լեհ ժողովուրդը ակտիվ կերպով պայքարում է խաղաղության համար, գտնվելով խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի հզոր լագերի շարքերում, որին գլխավորում է Սովետական Միությունը։ Լեհ ժողովուրդը խորապես երախտապարտ է սոցիալիզմի երկրին՝ նրան ցույց տվող բազմակողմանի եղբայրական օգնության համար։ Լեհաստանի աշխատավորները գիտեն, որ ամուր, անխախտ բարեկամությունը Սովետական Միության հետ՝ սոցիալիզմի կառուցման գործում նրանց հետագա հաջողությունների գրավականն է։*

Պ. ԳԼՈՒՇԱԿՈՎ

---

## ՏԵՂԵԿԱՏՈՒ ԲԱԺԻՆ

**Մակուլատուրային գրականություն**— *անպետք և վնասակար գրականություն, բառացի նշանակում է տպագրական խոտան: Մակուլատուրային գրականությունը խիստ տարածված է ԱՄՆ-ում, որը իմպերիալիստների կողմից օգտագործվում է բնակչության և հատկապես մատաղ սերնդի մեջ բռնությունն ու մարդասպանությունը պրոպագանդելու, լրտեսությունն ու ավազակությունը փառաբանելու համար: Ամերիկյան իմպերիալիստները մակուլատուրային գրականության միջոցով ձգտում են ընթերցողներին ներշնչել ազգային թշնամության ու ռասսայական ատելության զգացմունք և այդ ճանապարհով աճող սերնդից դաստիարակել խղճից ու պատվից զուրկ մարդիկ, որոնք ատելությամբ համակվեն դեպի այն ամենը, ինչ առաջավոր է, որոնք պատրաստ լինեն սպանելու, թալանելու և տանջելու աշխատավորներին:*

**Միլիտարիզմ**— *սպառազինության ու պատերազմի նախապատրաստության և ազգային թշնամանքի բորբոքման քաղաքականու-*



*թյուն բուրժուական երկրներում, որը հասցնում է պատերազմների: Այժմ միլիտարիզմի քաղաքականություն են վարում ԱՄՆ-ի և Անգլիայի ռեակցիոն կառավարողները, որոնք երկրի ամբողջ տնտեսությունը ռազմականացրել են ու ագրեսիվ, թալանչիական պատերազմ են մղում կորեական ժողովրդական ռեսպուբլիկայի դեմ, ձգտելով բորբոքել համաշխարհային նոր պատերազմ և այդ ճանապարհով, այսինքն միլիտարիզմի ճանապարհով հաստատել իրենց համաշխարհային տիրապետությունը:*

**Մոնոպոլիա**— *արտադրության, վաճառքի և տիրապետության բացառիկ իրավունք: Կապիտալիստական մոնոպոլիաները բնորոշ երևույթ են ժամանակակից բուրժուական երկրներում: Մոնոպոլիստները իրենց ձեռքում կենտրոնացնում են որոշակի ապրանքների արտադրությունը և վաճառքը, մոնոպոլ ձևով տնօրինում են հումքը, սահմանում ցանկացած գները և բնակչության մեծամասնության շահագործման, քայքայման ու աղքատացման միջոցով, ուրիշ երկրների, հատկապես հետամնաց երկրների ժողովուրդների ստրկացման ու սիստեմատիկ կողոպտման միջոցով, պատերազմների և ժողովրդական տնտեսության ռազմա-*

կանացման միջոցով ստանում են ամենաբարձր շահույթներ։

**Բիրժա**— լատիներեն բառ է, նշանակում է քսակ կամ դանձարկղ, իրականում դա առևտրական հիմնարկություն է, որը գոյություն ունի կապիտալիստական երկրների մեծ քաղաքներում։ Բիրժաները լինում են երեք տեսակ՝ ֆոնդային, աշխատանքային և ապրանքային։

**Ֆոնդային** *բիրժայում կատարվում են արժեթղթերի գնում և վաճառք, որի վարչությունը գրանցում է այդ կարգի բոլոր գործարքները և հրապարակում է արժեթղթերի գները։ Խոշոր բանկերը, վաշխառուներն ու սպեկուլյանտները այս կամ այն արժեթղթի կամ ապրանքի նկատմամբ հաճախ ստեղծում են կեղծ պահանջ՝ գների բարձրացման կամ իջեցման մասին, ստեղծում են այսպես կոչված գների խաղ և այդ ճանապարհով հարստանում ուրիշների հաշվին։*

**Աշխատանքային** *բիրժան ծագել է 19-րդ դարի վերջերին առավել զարգացած կապիտալիստական երկրներում՝ Անգլիայում, Ֆրանսիայում, Գերմանիայում և ԱՄՆ-ում։ Նա էժան գնով բանվորական ուժ է մատակարարել կապիտալիստներին, կապիտալիզմի զարգացման ժամանակաշրջանում՝ ուժեղաց-*



*նելով բանվոր դասակարգի շահագործումը։ Իսկ այժմ, երբ առկա է կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամը, երբ գոյություն ունի մասսայական գործազրկություն, որը խրոնիկական երևույթ է կապիտալիզմի պայմաններում, աշխատանքային բիրժան կորցրել է իր նշանակությունը։ Բանվոր դասակարգի շահագործումն ուժեղացնող աշխատանքային բիրժայի դերը այժմ կատարում են կապիտալիստական երկրների ռեակցիոն պրոֆմիությունները և պետական ապարատը։*

**Ապրանքային** *բիրժան մասսայական ապրանքների մի տեսակ շուկա է, որտեղ գործարք է կատարվում ապրանքների գնման ու վաճառման վերաբերյալ, հատկապես այնպիսի ապրանքների, որոնք միջազգային առևտրի մեջ ունեն առաջատար դեր (հացահատիկ, ալյուր, բամբակ, բուրդ, կաուչուկ, մետաղ և այլն)։*

**Դիսկրիմինացիա**— *բառացի նշանակում է խտրականություն, որևէ տերության, ազգի կամ ռասայի իրավունքների նվաստացում։ Դիսկրիմինացիա միջազգային հարաբերությունների մեջ նշանակում է տարբեր մեթոդներով ու ձևերով պակասեցնել կամ նվաստացնել որևէ պետության իրավունքները։ Նման քաղաքականություն սովորաբար*

վարում են կապիտալիստական երկրների իմպերիալիստական տերությունները, ռեակցիոն կառավարողները։ Կապիտալիստական երկրներում դիսկրիմինացիայի քաղաքականություն են վարում ազգային փոքրամասնությունների, գաղութային ու կիսագաղութային ճնշված ժողովուրդների նկատմամբ։

ԱՄՆ-ում, օրինակ, դիսկրիմինացիայի, այսինքն խտրականության քաղաքականություն է տարվում նեգրերի նկատմամբ, որտեղ նեգր բնակչությունը զրկված է քաղաքացիական տարրական իրավունքներից, դատապարտված է ստրկական աշխատանքի, աղքատության ու սովի։ ԱՄՆ-ում նեգր բնակչությունը ենթարկված է դաժան հալածանքների։ Նրանց թույլատրվում է ապրել միայն քաղաքների ծայրամասերում գտնվող ներքնահարկերում և գետնախորշերում։ Նեգրը իրավունք չունի հաճախել այն հյուրանոցները, ճաշարանները, թատրոնները և այլ հասարակական վայրերը, որտեղ լինում են սպիտակները։ Ֆաշիստական բանդաները դաժան դատաստան են տեսնում անմեղ նեգր աշխատավորների հետ, այսպես կոչված Լինչի դատաստանի միջոցով։ Կեղծ մեղադրանքներով սպանում և բանտ են նետում նեգրերին։



Կու-Կլուկս-Կլան — ֆաշիստական մարդասպանների բանդա ԱՄՆ-ում, որը տմարդի մեթոդներով, առանց դատաստանի սպանում է նեգրերին և ամերիկյան աշխատավորների պրոգրեսիվ գործիչներին։ Մարդասպանների և թալանչիների այդ բանդան հովանավորվում է ԱՄՆ-ի ռեակցիոն կառավարողների կողմից։

Լինչի դատաստան — ինքնադատաստան ԱՄՆ-ում, գազանային դատաստան նեգրերի և ռևոլյուցիոն բանվորների նկատմամբ, որտեղ մարդուն ենթարկում են ծեծի ու կտտանքների, ֆիզիկապես ջարդում հաշմանդամ, կախում են կամ կենդանի այրում։ Լինչահարումն ամերիկյան գործելակերպ է, տիրող դասակարգի վայրենի բարքերի դրսևորում, որի նպատակն է ամրապնդել ամերիկյան իմպերիալիստների դասակարգային տիրապետությունը։

---

# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## I

## ՊԱՐՏԻԱՅԻ, ԿԱՌԱՎԱՐՈՒԹՅԱՆ ԵՎ ԺՈՂՈՎՐԴԻ ԱՆԽՈՐՏԱԿԵԼԻ ՄԻԱՍՆՈՒԹՅՈՒՆԸ

*1. ՍՍՌՄ հզորության անշեղ աճը Կոմունիստական պարտիայի վարած ճիշտ քաղաքականության և նրա կազմակերպական աշխատանքների արդյունքն է։*

*2. Մեր պարտիայի ուժն ու անպարտելիությունը մասսաների՝ ժողովրդի հետ ունեցած նրա սերտ ու անխզելի կապի և նրա ստեղծագործական ուժի նըկատմամբ անխորտակելի հավատի մեջ է։*

*3. ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամությունը՝ սոցիալիստական բազմազգ պետության հիմքերի հիմքն է և եղբայրական սովետական ռեսպուբլիկաների բոլոր հաջողությունների գլխավոր պայմանը։*

*4. Կոմունիստական պարտիայի ղեկավարության բարձրագույն սկզբունքը ղեկավարության կոլեկտիվությունն է։*

*5. Կոմունիստական շինարարության ամեն մի ասպարեզում, ամեն մի իրադրության մեջ ՍՍՌՄ աշ-*



*խատավորության ռևոլյուցիոն զգոնության բարձրացումը կարևոր անհրաժեշտություն է։*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ— Ճառ պարտիայի 19-րդ համագումարում, *Հայպետհրատ, 1952 թ.։*

Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ— Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին, *բաժին 3-րդ, Հայպետհրատ, 1952 թ.։*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կանոնադրությունը։ *Հայպետհրատ, 1952 թ.։*

Կոմունիստական պարտիան սովետական ժողովրդի ուղղություն տվող և ղեկավար ուժն է (*«Պարտիական կյանք», № 7, 1953 թ.)։*

«Ագիտատորի բլոկնոտ»-ի *№ 13-ի առաջնորդողը։*

«Պրավդա»-ի *հուլիսի 10-ի 11-ի, 13-ի և 15-ի առաջնորդողները տպագրված «Ս. Հ.»-ի 1953 թվականի հուլիսի 11-ի, 12-ի, 14-ի և 16-ի համարներում։*

## II

## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ԱՆՇԵՂ ՎԵՐԵԼՔԸ

*1. ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1953 թվականի առաջին կիսամյակի պետական պլանների կատարման արդյունքները ցույց են տալիս սոցիալիստական էկոնոմիկայի անշեղ վերելքը։*

2. Ժողովրդական տնտեսության և կուլտուրայի աճը 1953 թվականի առաջին կիսամյակում, ինչպես նաև 1951 ու 1952 թվականների պլանների կատարման արդյունքները վկայում են ՍՍՌՄ զարգացման հինգերորդ հնգամյա պլանի վերաբերյալ պարտիայի 19-րդ համագումարի դիրեկտիվներում առաջադրված խնդիրները հաջողությամբ կատարելու մասին։

3. Մանր ինդուստրիայի անընդհատ վերելքի և գյուղատնտեսական արտադրանքի աճի շնորհիվ մեզ մոտ ստեղծված է հումքի բազա՝ սպառման առարկաներ արտադրող արդյունաբերության զարգացման համար։

4. Սովետական մարդու բարօրությունը, սովետական ժողովրդի բարգավաճումը բարձրագույն օրենք է Կոմունիստական պարտիայի համար։

5. Կոմունիստական շինարարության շահերը պահանջում են լրիվ օգտագործել ժողովրդական տնտեսության ընդերքում թաքնված բազմահարուստ ներքին ռեզերվները։

6. Մեր երկրի աշխատավորներն ավելի ու ավելի լայնորեն են ծավալում սոցիալիստական մրցությունը՝ հինգերորդ հնգամյակը կատարելու և գերակատարելու համար։

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ— Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրո-



նական Կոմիտեի աշխատանքի մասին, *Հայպետհրատ, 1952 թ.*։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1953 թվականի 1-ին կիսամյակի պետական պլանի կատարման արդյունքների մասին ՍՍՌՄ Մինիստրների Սովետին կից Կենտրոնական Վիճակագրական Վարչության հաղորդագրությունը (*«Սովետական Հայաստան» թերթի հուլիսի 18-ի համարը*)։

«Պրավդա»-ի հուլիսի 17-ի առաջնորդողը (*արտատպված «Սովետական Հայաստան» թերթի հուլիսի 18-ի համարում*)։

Պարտիայի 19-րդ համագումարի դիրեկտիվները ՍՍՌՄ զարգացման 1951—1955 թ. թ. 5-րդ հնգամյա պլանի մասին, *Հայպետհրատ, 1952 թ.*։

---

Խմբագրի տեղակալ՝
Գ. ՄՈՒՐԱԴԽԱՆՅԱՆ

ՎՖ 03421 Պատվեր № 679 Տիրաժ 9100

Հայպոլիգրաֆհրատի № 2 տպարան, Երևան,
Կնունյանցի № 8, 1953 թ.։